Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 12 (90)

«ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ՅԵՐԵՎԱՆ—1940 թ.

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ



# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 12 (90)

«ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1940 թ.

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





# ՊԵՏԱԿԱՆ ՓՈԽԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐՆ ՈՒ ԱՎԱՆԴՆԵՐԸ

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՖԻՆԱՆՍԱՎՈՐՄԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ

*Ամբողջ Խորհրդային երկրում այժմ բանվորները, կոլտնտեսականներն ու ծառայողները ստանում են Երրորդ հնգամյակի (երկրորդ տարվա) փոխառության պարտատոմսերը: Մոսկվայում, Մոսկվայի մարզում և ուրիշ շատ մարզերում այդ կապակցությամբ անց է կացվում «Պարտատոմսատերի և ավանդատուի օրը»: Այդ օրվա նպատակն է՝ լայնորեն պարզաբանել մեր պետական փոխառությունների դերն ու նշանակությունը, միջոցները խնայողական դրամարկղներում պահելու ձևա-*

նըտվությունը և հարմարությունը, բարելավել փոխադրությունների և ավանդների գործում կատարվող ամբողջ աշխատանքը:

Ի՞նչի համար են ուրեմն խորհրդային պետական փոխադրությունները, ի՞նչ դեր են խաղում ժողովրդական խնայողությունները մեր յերկրում:

Խորհրդային Միությունը, բոլշևիկյան կուսակցության և մեծ Ստալինի ղեկավարությամբ, դարձել ե ինդուստրիալ մի հզոր տերություն, աշխարհիս ամենաառաջավոր և խոշոր գյուղատնտեսության յերկիր, առաջավոր կուլտուրայի յերկիր: Հսկայական չափով աճել ե քաղաքի աշխատավորության և կոլտնտեսային գյուղի նյութական բարեկեցությունը:

Հեղափոխությունից առաջ մեր յերկիրը չափազանց հետամնաց, խղճուկ, աղքատ եր: «Ռուսաստանը,— գրել եր Վ. Ի. Լենինը 1913 թ.,— մնում ե վորպես աներևակայելի, չտեսնված չափով հետամնաց, աղքատիկ ու կիսավայրենի մի յերկիր, վոր արտադրության ժամանակակից գործիքներով սարքավորված ե Անգլիայից չորս անգամ ավելի վատ, Գերմանիայից



հինգ անգամ ավելի վատ, Ամերիկայից տասն անգամ ավելի վատ»[1]:

Չտեսնված կարճ ժամանակամիջոցում, Լենինի–Ստալինի կուսակցության և ամբողջ խորհրդային ժողովրդի ջանքերով, մեր յերկրում ստեղծվեց առաջնակարգ արդյունաբերություն, ամբողջ ժողովրդական տնտեսությունը վերակառուցված ե նոր, ժամանակակից տեխնիկայի հիման վրա:

Արտադրության տեխնիկայով և արդյունաբերության աճման տեմպով ԽՍՀՄ-ն կապիտալիստական առաջավոր յերկրներից առաջ անցավ:

Աշխարհում առաջին տեղը գրավեց նաև մեր սոցիալիստական հողագործությունը: Նա վոչ միայն ամենախոշորն ե, այլև ամենից ավելի յե զինված ժամանակակից տեխնիկայով: Բավական ե, յեթե ասենք, վոր մեր գյուղատնտեսության մեջ յերկու անգամ ավելի կոմբայն կա, քան բոլոր կապիտալիստական յերկրներում միասին վերցրած:

1940 թվականին բացված Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը

1) Վ. Ի. ԼԵՆԻՆ, հատ. 16, եջ 543. ռուս հրատարակություն:

հանդիսանում է կոլտնտեսային կարգի հրաշալի հաղթանակների, սոցիալիստական գյուղատնտեսության մեծագույն նվաճումների նոր, ակնառու ցուցադրումը:

Մեր յերկրում իսկական կուլտուրական հեղափոխություն է կատարված, որի հետեվանքով վիթխարի չափով բարձրացել է մասսաների կուլտուրական մակարդակը:

1897 թվականին Ռուսաստանի ազգաբնակչության համարյա յերեք քառորդ մասն անգրագետ եր, այժմ գրագիտությունը հասել է 81.2 տոկոսի: 14,3 միլիոն խորհրդային քաղաքացիներ բարձրագույն և միջնակարգ կրթություն ունեն:

ԽՍՀՄ-ն թեվակոխել է զարգացման մի նոր շրջան՝ սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու շրջանը: Ընկեր Ստալինը, ՀամԿ(բ)Կ-ի 18-րդ համագումարում իր տված զեկուցման մեջ մի պատմական խնդիր դրեց յերկրի առջև՝ առաջիկա 10—15 տարում հասնել և անցնել կապիտալիստական գլխավոր յերկրներից նաև տնտեսական տեսակետից: ԽՍՀՄ-ի այդ հիմնական տնտեսական խնդրի կատարման գործում հսկայական ավանդ կլինի յերրորդ ստալինյան հնգամյակի պլանի հաջող իրականացումը:



Որ յերրորդ հնգամյա պլանը հաջող է իրականացվում, վկայում են 1939 թվականի արդյունքները: Այդ տարին մեր ամբողջ ժողովրդական տնտեսությունն ե՛լ ավելի առաջ գնաց: Արդյունաբերության արտադրանքը, համեմատած 1938 թվականի հետ, աճեց 14,7 տոկոսով, գյուղատնտեսության արտադրանքը նույնպես զգալի չափով ավելացավ, ապրանքաշրջանառությունն աճեց 16,7 տոկոսով: 1940 թվականը կլինի մեր ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հետագա վերելքի տարին, մասսաների նյութական և կուլտուրական մակարդակի հետագա աճման, Խորհրդային Միության պաշտպանության հետագա ամրացման տարին:

Յերկիրն ինդուստրացնելու, մանր գյուղացիական տնտեսությունը կոլեկտիվացման ռելսերի վրա փոխադրելու, գյուղատնտեսությունն առաջավոր մեքենայական տեխնիկայով զինելու համար, յերկիրը պաշտպանության անառիկ բերդ դարձնելու համար, հսկայական միջոցներ եյին հարկավոր: Բազմամիլիարդ ներդրումներ են հարկավոր նաև իրականացնելու համար ԽՍՀՄ-ի այն հիմնական տնտեսական խըն-

դիրը, վորն առաջադրել է ընկեր Ստալինը: Բայց վորտեղի՞ց է ճարում Խորհրդային պետությունն այդ միջոցները, վորո՞նք են այն աղբյուրները, վորոնցով ֆինանսավորվում է տնտեսական, կուլտուրական և պաշտպանական շինարարությունը մեր յերկրում:

1926 թվականին, յերբ ԽՍՀՄ-ն դեռ նոր եր թևակոխել ինդուստրացման ժամանակաշրջանը, ընկեր Ստալինն ամբողջ հասակով դրեց ինդուստրացումը ֆինանսավորելու աղբյուրների հարցը և ցույց տվեց այդ աղբյուրները: Ընկեր Ստալինն այն ժամանակ ասել եր՝

«Պատմությանը հայտնի յեն ինդուստրացման զանազան յեղանակներ: Անգլիան ինդուստրացել է այն բանի շնորհիվ, վոր տասնյակ և հարյուրավոր տարիներ կողոպտել է գաղութները, այնտեղ «լրացուցիչ» կապիտալներ է հավաքել, ներդրել է դրանք իր արդյունաբերության մեջ և արագացրել է իր ինդուստրացման տեմպը: Դա ինդուստրացման մի յեղանակն է: Գերմանիան իր ինդուստրացումն արագացրել է անցյալ դարի 70-ական թվականներին Ֆրանսիայի դեմ մղած հաղթական պատե-



րազմի հետևանքով, յերբ նա Ֆրանսիացիներից հինգ միլիարդ կոնտրիբուցիա վերցնելով, ներդրել է իր արդյունաբերության մեջ: Դա ինդուստրացման յերկրորդ յեղանակն է: Այդ յերկու յեղանակներն ել մեզ համար փակված են, վորովհետև մենք խորհուրդների յերկիր ենք, վորովհետև գաղութային կողոպտումները և պատերազմական հափշտակումները՝ կողոպտելու նըպատակով, անհամատեղելի յեն Խորհրդային իշխանության բնության հետ: Ռուսաստանը, հին Ռուսաստանը, ճորտային կոնցեսիաներ եր տալիս և ստրկացուցիչ փոխառություններ եր ստանում, աշխատելով այդպիսով աստիճանաբար դուրս գալ ինդուստրացման ճանապարհը: Դա յերրորդ յեղանակն է: Սակայն դա ճորտության կամ կիսաճորտության ուղին է, Ռուսաստանը կիսագաղութ դարձնելու ուղին: Այդ ուղին ել փակված է մեզ համար, վորովհետև մենք նրա համար քաղաքացիական յեռամյա պատերազմ չենք մղել, հետ մղելով բոլոր և ամեն տեսակ ինտերվենցիոնիստներին, վորպեսզի այնուհետև, ինտերվենցիոնիստներին հաղթելուց հետո, հոժարակամ ճորտանանք իմպերիալիստներին: Մնում է

ինդուստրացման չորրորդ ուղին՝ արդյունաբերության գործի համար սեփական խնայողություններ ունենալու ուղին, սոցիալիստական կուտակման ուղին, վորը քանիցս մատնանշել է ընկ. Լենինը, վորպես մեր յերկրի ինդուստրացման միակ ուղին»[1]):

Բոլշևիկյան կուսակցությունը տարավ մեր յերկիրն այն ճանապարհով, վորը ցույց եյին տվել Լենինը և Ստալինը: Մեզ մոտ ներքին ռեսուրսները միանգամայն բավական եյին սոցիալիզմի կառուցումն ապահովելու համար: Այդ միջոցները կազմվում են նախ և առաջ սոցիալիստական ձեռնարկությունների կուտակումներից: Մեր ֆաբրիկների ու գործարանների, տրանսպորտի, գյուղատնտեսական ու առևտրական ձեռնարկությունների շահույթը ծախսվում է վոչ թե կապիտալիստների մակաբույծ դասակարգի սպառումների վրա,— այդ դասակարգը վաղուց է վերացված մեզանում,— այլ արդյունաբերության և ամբողջ ժողովրդական տնտեսության հետագա ընդարձակման վրա:

1) Լենին և Ստալին ժողովածու, հատոր III, եջ՝ 59, Համկ(բ)Կ ԿԿ–ին կից կուսհրատ, 1938 թ.



Սոցիալիստական ձեռնարկությունների կուտակումները Խորհրդային պետության յեկամուտների հիմքն են հանդիսանում, կազմելով պետական բյուջեյի յեկամուտների 90 տոկոսը: Հետևապես, մեր պետական բյուջեյի կատարումը նախևառաջ կախված է արտադրական ծրագրերի կատարումից, աշխատանքի արտադրողականության բարձրացումից, ինքնարժեքի իջեցումից, տնտեսության մեջ նյութական ու փողային արժեքները խնայողաբար ծախսելուց, այսինքն այն բանից, վորն ապահովում է մեր յերկրի համար սոցիալիստական կուտակման աճումը:

Բնակչությունից գանձվող հարկերն ու տուրքերը մեր բյուջեյում կազմում են աննշան, այն ել տարեց տարի նվազող տեսակարար կշիռ: 1933 թվականին հարկային հասույթները բյուջեյի յեկամուտների մեջ կազմում եյին 5,9 տոկոս, իսկ 1940 թվականին՝ 5,3 տոկոս:

Բյուջեյի քաղաքական մեծ նշանակություն ունեցող յեկամտային եյական աղբյուրն են կազմում խորհրդային պետական փոխառությունները: Դրանք բոլորովին նոր փոխառություններ են, վորպիսիք չկան և

չեն կարող լինել կապիտալիստական և վոչ մի յերկրում:

## ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՓՈԽԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Վո՞րն է կապիտալիստական պետությունների փոխառությունների էությունը: Հենց այն, վորը կազմում է այդ յերկրների նաև բյուջեների էությունը:

Կապիտալիստական յերկրներում բյուջետային յեկամուտների միակ աղբյուրն են բնակչությունից գանձվող հարկերը, վորոնց մեջ գլխավոր դերն են խաղում անուղղակի հարկերը, այսինքն սպառման առարկաների վրա դրվող հարկերը, վորոնք հսկայական ծանրությամբ ընկած են աշխատավոր լայն մասսաների ուսերին:

Կապիտալիստական պետությունների բյուջեների միջոցները ծախսվում են բանակները պահելու, պատերազմական պարտքերը վճարելու, իմպերիալիստական պատերազմներ նախապատրաստելու և մղելու վրա, չինովնիկներ և վոստիկանություն պահելու վրա, վորոնք անողոքաբար ճըն-



շում են ժողովրդական մասսաների հեղափոխական շարժումը:

Միջոցների այդպիսի վոչ-արտադրողական ծախսումը խրոնիկական դեֆիցիտներ է ստեղծում կապիտալիստական յերկրների բյուջեներում: Հենց այդ դեֆիցիտները ծածկելու համար է, վոր բուրժուական կառավարությունները փոխառություններ են բաց թողնում:

Վերցնենք, որինակի համար, Անգլիայի բյուջեն: 1939—1940 թ. թ. բյուջետային տարում այդ բյուջեն կատարվել էր ըստ յեկամուտների 1049 միլլիոն ֆունտ ստերլինգ գումարով և ըստ ծախսերի՝ 1817 միլլիոն ֆունտ ստերլինգով, այսինքն 768 միլիոն ֆունտ ստերլինգ դեֆիցիտով:

1049 միլլիոն ֆունտ յեկամուտներից 1017 միլլիոն ֆունտը, կամ համարյա 97 տոկոսը, ընկնում է հարկերին:

Անգլիական բյուջեյի համարյա բոլոր ծախսերը ուղղակի կամ անուղղակի կերպով կատարվել են յերկրորդ իմպերիալիստական պատերազմը նախապատրաստելու և մղելու վրա:

Բյուջետային դեֆիցիտը ծածկելու համար, անգլիական կառավարությունը այս

տարվա մարտի սկզբին բաց թողեց ռազմական առաջին փոխառությունը 300 միլիոն ֆունտ ստերլինգ գումարով՝ տարեկան 3 տոկոսով: 1940 թվականի մարտի վերջերին այդ փոխառությամբ ստացվեց միայն 99 միլիոն ֆունտ ստերլինգ: Դեֆիցիտի ամբողջ մնացած մասը ծածկվեց կարճաժամկետ փոխառություններով (գանձատնային պարտաթղթեր, խնայողական սերտիֆիկատներ, ազգային պաշտպանության բոներ):

Անգլիայի բուրժուական կառավարիչները փորձում են բանվորների ու ծառայողների խնայողությունները ներգրավել այսպես կոչված ազգային-խնայողական սերտիֆիկատների մեջ: Այդ կամպանիան գլխավորող անգլիական բուրժուական գործիչները աներկմիտ կերպով հայտարարեցին, որ յեթե սերտիֆիկատների իրացումը սպասված արդյունքը չտա, կառավարությունը կդիմի դրանց հարկադրական իրացմանը:

Չնայած այդ սպառնալիքին խնայողական սերտիֆիկատների իրացումը չափազանց դանդաղ է ընթանում: Յեթե անցյալ տարվա վերջին շաբաթվա մեջ ստացվում եր



9—11 միլիոն ֆունտ ստերլինգ, ապա ապրիլին այդ գումարը իջավ 4 միլիոնի:

Անգլիայի 1940/1941 տարվա բյուջեն ամբողջովին և լրիվին պատերազմի բյուջե յե: Նա կազմված է 1432 միլիոն ֆունտ ստերլինգ վիթխարի դեֆիցիտով: Նորից բարձրացվում են սպառման առարկաների հարկերը: Լուցկու, ծխախոտի, գարեջրի, վոգելից խմիչքների բաժերն ու մաքսային տուրքերն ավելցվում են ընդհանուր առմամբ 46 միլիոն ֆունտ ստերլինգով: Ծրագրված է նոր հատուկ հարկեր մտցնել արդյունաբերական և պարենային ապրանքների համար:

Նույնն է նաև ֆրանսիական բուրժուական կառավարության ֆինանսական քաղաքականությունը:

Ֆրանսիայի 1940 թվականի բյուջեն ըստ յեկամուտների կազմում է 80 միլիարդ ֆրանկ, իսկ ըստ ծախսերի՝ 335 միլիարդ ֆրանկ, վորի ճնշող մասը հատկացվում է պատերազմի ֆինանսավորմանը: Այսպիսով դեֆիցիտը կազմում է 255 միլիարդ ֆրանկ, այսինքն՝ յեկամուտներից ավելի քան յերեք անգամ շատ: 80 միլիարդ ֆրանկ յեկամուտից 66 միլիարդը կազմում են հարկերը:

Այս տարի անուղղակի հարկերն արդեն ավելացվել են 10 միլիարդ ֆրանկով։ Գերմանիայի դեմ մղվող պատերազմի սկզբին Ֆրանսիայի պետական պարտքը կազմում էր մոտ 450 միլիարդ ֆրանկ, իսկ տարվա վերջին (հաշվի առնելով պատերազմական ծախսերը ծածկելու համար բաց թողնվող փոխառությունները) հասավ 770 միլիարդի։

Ճապոնիայի բյուջեն 1939/1940 տարում կազմում էր ըստ եկամուտների 3076 միլիոն իեն, իսկ ըստ ծախսերի՝ 9410 միլիոն. դեֆիցիտը՝ 6334 միլիոն իեն։ Ճապոնիայի պետական պարտքը 1939/1940 տարվա վերջին հասավ 23 միլիարդ իենի։ Դա Չինաստանում մղվող հափշտակողական պատերազմի արդյունքն էր, մի պատերազմ, որը լիակատար քայքայման հասցրեց Ճապոնիայի տնտեսությունն ու ֆինանսները։

Դեֆիցիտը ծածկելու համար, ճապոնական կառավարությունը բաց է թողնում նորանոր փոխառություններ, որոնք, չնայած նրանց հարկադրական բնույթին, կառավարությունը չի կարողանում ամբողջովին իրացնել։

Մեր բերած թվերն ու փաստերը ցույց



են տալիս, թե կապիտալիստական երկրներում պետական պարտքի և մասսաների սպառման առարկաների հարկման ինչպիսի հրեշավոր աճման է հասցրել երկրորդ իմպերիալիստական պատերազմը։ Մենք նաև տեսնում ենք, որ կապիտալիստական երկրներում փոխառությունները ծառայում են իմպերիալիստական բուրժուազիայի շահերին, հանդիսանում են աշխատավոր մասսաներին շահագործելու գործիք։

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՊԵՏԱԿԱՆ ՓՈԽԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Միանգամայն տարբեր է բանը ԽՍՀՄ-ում։ Հայտնի է, որ Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ հեղափոխությունից անմիջապես հետո, խորհրդային իշխանությունը չեղյալ հայտարարեց ցարական Ռուսաստանի արտաքին և ներքին բոլոր փոխառությունները, լիկվիդացիայի ենթարկելով այն հսկայական պարտքերը, որոնք որպես ծանր բեռ ընկած էին տնտեսության և աշխատավոր մասսաների վրա։ «Չպետք է մոռանալ,— ասել էր ընկեր Ստալինը,— որ այդ պարտքերը թող-

նելու դեպքում մենք ստիպված կլինեինք ամեն տարի վճարել մի քանի միլլիոն միայն տոկոս, ի վնաս արդյունաբերության, ի վնաս մեր ամբողջ ժողովրդական տնտեսության»[1])։ Խորհրդային իշխանության այդ ակտը զգալիորեն թեթևացրեց մեր կուտակումների գործը՝ հետագայում։

Խորհրդային կառավարությունը, վերացնելով ցարական Ռուսաստանի պետական վարկի սիստեմը, սկսեց ստեղծել խորհրդային պետական փոխառությունների սիստեմը։

1926 թվականին ընկեր Ստալինը մատնանշել էր, թե «ներքին փոխառությունների գործի կազմակերպման խնդիրը մեր առջև ծառացած է, անտարակույս, որպես հերթական խնդիր, և մենք ինչ գնով էլ լինի պետք է լուծենք այն»[2])։

Այդ խնդիրն այժմ հաջողությամբ լուծված է։ Խորհրդային պետական փոխառությունները լայն զարգացում ստացան, դար-

---

1) Լենին և Ստալին Ժողովածու, հատ. III եջ՝ 59, ՀամԿ(բ)Կ ԿԿ-ին կից կուսհրատ, 1938 թ.

2) Նույն տեղ, եջ՝ 60.



ձան կուսակցության ու կառավարության ամենից ավելի ժողովրդականություն վայելող ֆինանսական ձեռնարկումներից մեկը յերկրում։

Բայց ի՞նչի համար են այդ փոխառությունները։

Խորհրդային պետական բյուջեն, որն ամուր հենված է սոցիալիստական տնտեսության կուտակումների վրա, դեֆիցիտ չգիտե։ Ընդհակառակը, մեր բյուջեն տարեց տարի կատարվում է այնպես, որ յեկամուտները գերակշռում են ծախսերից։ Յերկրորդ հնգամյակի տարիներին այդ գերազանցումը կազմեց 13,3 միլլիարդ ռուբլի, 1938 թվականին՝ 3,5 միլլիարդ, 1939 թվականին՝ 2,8 միլլիարդ ռուբլի։

ԽՍՀՄ-ի Գերագույն Խորհրդի VI Սեսիայի հաստատած 1940 թվականի պետական բյուջեն կազմված է այնպես, որ յեկամուտները համարյա 2,6 միլլիարդ ռուբլով գերազանցում են ծախսերից։ Բացի դրանից, միութենական բյուջեյի միջոցներից 1475 միլլիոն ռուբլի մնացորդ է նախատեսված առ 1 հունվարի 1941 թվականի Պետական բանկի հաշիվներում։

Հետևաբար, մեր փոխառությունների

նպատակը չէ բյուջետային դեֆիցիտները ծածկելը,— մենք դեֆիցիտ չունենք,— այլ ուրիշ բան: Խորհրդային փոխառությունները լրացուցիչ աղբյուր են հանդիսանում մեր յերկրի տնտեսությունը, կուլտուրան և պաշտպանական ձեռնարկումները ֆինանսավորելու համար: Նրանք ոգնում են և՛ ավելի արագորեն իրականացնելու կոմունիստական հասարակության կառուցումը, և՛ ավելի ապահովելու քաղաքացիների այն իրավունքները, վորոնք արձանագրված են Ստալինյան Սահմանադրության մեջ:

Փոխառությունների տոկոսները վճարելու և այդ փոխառությունները մարելու համար մեր Խորհրդային պետությունը հարկերն ավելացնելու կարիք չունի: Պետական փոխառությունների պարտատոմսատերերի առջև իր ունեցած պարտավորությունները կատարելու համար, մեր պետությունը միջոցներ է ստանում սոցիալիստական տնտեսության կուտակումներից, վորոնց աճմանը նպաստում են մեր փոխառությունները:

Խորհրդային առաջին մասսայական փոխառությունը, վորն իրացվել էր նախապես բաժանեգրվելու կարգով, մասնավճարով,— Ինդուստրացման առաջին փոխառությունն



էր, վոր բաց էր թողնվել 1927 թվականին: Այդ փոխառությանը բաժանեգրվել էյին 6 միլիոն աշխատավորներ 200 միլիոն ռուբլի գումարով:

Այդ ժամանակվանից մեր փոխառությունների զարգացումն արագ տեմպով առաջ գնաց: Հնգամյակի Չորրորդ Ավարտական Տարվա փոխառությանը 1932 թվականին բաժանեգրվեց արդեն 40 միլիոն մարդ 3200 միլիոն ռուբլով, իսկ Յերրորդ Հնգամյակի (յերկրորդ տարվա) փոխառությանը 1939 թվականին բաժանեգրվեցին ավելի քան 50 միլիոն աշխատավորներ, 7,6 միլիարդ ռուբլի գումարով: Այդ թվերը վկայում են, վոր խորհրդային փոխառությունները բուն ժողովրդական փոխառություններ են:

Ստալինյան հնգամյակների տարիներին մեր յերկրի աշխատավորները 36 միլիարդ ռուբլուց ավելի փոխառություն տվին պետությանը: Մոսկվայի աշխատավորները նույն տարիներին ավելի քան 3,4 միլիարդ ռուբլի հանձնեցին պետությանը: Ներկայումս մայրաքաղաքի բաժանորդների թիվը 2170 հազար հոգուց ավելի յե, իսկ

բաժնեգրության չափը հասել է 395 ռուբլու՝ 1937 թվականի 243 ռուբլու դիմաց:

Փոխառությունների բաժնեգրությունն աճում է նաև Մոսկվայի մարզի շրջաններում: 1937 թվականին բաժնեգրությունը կազմեց 153,5 միլիոն ռուբլի, իսկ 1939 թվականին՝ 264,2 միլիոն ռուբլի: Նույն ժամանակաշրջանում բաժանորդների թիվը 1045 հազարից հասավ 1345 հազար հոգու:

Վերջին տարիներս կոլտնտեսային գյուղում հրաշալի շարժում ծավալվեց փոխառության բաժնեգրությունը ժամկետից առաջ մուծելու համար: Անցյալ տարի, օրինակ, շատ արտելների կոլտնտեսականները բաժնեգրման առաջին ամիսներին ժամկետից առաջ մարեցին բաժնեգրության հաշիվները:

Մոսկվայի մարզում 963 արտելի կոլտնտեսականներ փոխառության ամբողջ գումարը մուծեցին դեռ 1940 թվականի հունվարի 1-ից առաջ, իսկ բաժնեգրելու առաջին ամսվա ընթացքում հաշիվները փակեցին 341 գյուղատնտեսական արտելի կոլտնտեսականները: Կունցևոյի շրջանի Խորոշևսկի գյուղխորհրդի «Զարյա սոցիալիզմա» արտելի անդամները բաժնեգրվեցին



27125 ռուբլու և տեղն ու տեղը կանխիկ մուծեցին բաժնեգրության ամբողջ գումարը: Նույնպես վարվեցին Ձերժինսկու անվան կոլտնտեսության մեջ (Լենինյան շրջանի Դյակովոյի գյուղխորհուրդը), Ֆյոդորովոյի կոլտնտեսության մեջ (Վինոգրադովսկի շրջան) և ուրիշ շատ կոլտնտեսություններում:

Պետական փոխառությունների պարտատոմսատերերի թվի և բաժնեգրության գումարի հսկայական աճումը ցայտուն կերպով ցույց է տալիս խորհրդային փոխառությունների հաջողություններն ու ժողովրդականությունը: Սոցիալիստական պետության փոխառությունները միշտ իրացվել են կարճ ժամանակամիջոցներում և բաց թողնվող գումարից գերազանց գումարով: Երրորդ հնգամյակի փոխառությունը (յերկրորդ տարվա), օրինակ, բաց էր թողնվել 6 միլիարդ ռուբլով, իսկ իրացվել էր 20 օրվա ընթացքում 7637 միլիոն ռուբլով: Միևնույն ժամանակ այդ գումարը 29 տոկոսով ավելի յե 1938 թվականի փոխառության՝ բաժնեգրությունից:

Խորհրդային փոխառությունների հաջողության և ժողովրդականության պատճա-

ըր նրանց արտադրողական նպատակն է, այն, վոր մեր փոխառությունները ծառայում են Խորհրդային Միության տնտեսական հզորության ուժեղացմանը, նրա կուլտուրական բարգավաճմանը, պաշտպանունակության ամրացմանը, ոգնում են կոմունիստական հասարակության կառուցմանը:

Խորհրդային փոխառությունների այդ ստեղծարար դերը կարելի յե տեսնել մեր անծայրածիր հայրենիքի յուրաքանչյուր քաղաքում և շրջանում, նրա յուրաքանչյուր անկյունում: Որինակ, Մոսկվայում վերջին հինգ տարվա ընթացքում կառուցվել է 379 նոր դպրոց, 11 ծննդատուն, կանանց և յերեխաների 38 կոնսուլտացիա, 225 մանկամսուր: Մանկապարտեզների թիվը հասավ 984-ի: Այժմ մայրաքաղաքում կա 438 ամբուլատորիա և պոլիկլինիկա, 150 ստացիոնար բուժհիմնարկ և այլն: Հաջողությամբ իրականացվում է մայրաքաղաքի վերակառուցման ստալինյան պլանը: Միայն վերջին յերկու տարվա ընթացքում մայրաքաղաքի քաղաքային տնտեսության մեջ ներդրված է 2400 միլիոն ռուբլի: Չորս տարվա մեջ Մոսկվայի խորհուրդը 11,4 միլիոն ռուբլի պետական նպաստ է



տվել բազմազավակ մայրերին: Այդ բոլորի մեջ քիչ չէ փոխառություններից ստացված միջոցների բաժինը:

Մեզ մոտ փոխառությունների բաժնեգրությունը միշտ քաղաքական մեծ վոգևորությամբ է անցնում: Բանվորները, կոլտնտեսականները, ինտելիգենցիան՝ ամբողջ խորհրդային ժողովուրդը, միահամուռ կերպով բաժնեգրվելով փոխառությանը, իր սերն է արտահայտում դեպի հայրենիքը, իր անսահման՝ նվիրվածությունը բոլշևիկյան կուսակցությանը և մեծ Ստալինին, իր անհողդողդ կամքը՝ ուժ ու միջոց չխնայել կոմունիզմի հաղթանակին հասնելու համար:

Խորհրդային փոխառությունների ժողովրդականությունը բացատրվում է նաև նրանով, վոր նրանք զգալի յեկամուտ են բերում պարտատոմսատերերին:

Մեր փոխառությունները հանդիսանում են աշխատավորների անձնական կուտակումները պահ տալու ամենաձեռնտու ձևերից մեկը: Բավական է յեթե ասենք, վոր մինչև 1940 թվականը պարտատոմսատերերին վճարվել է 6,5 միլիարդ ռուբլի՝ վորպես փոխառությունների տոկոսներ ու

շահումներ (ներառյալ մարված պարտատոմսերի արժեքը)։

Նույն ժամանակամիջոցում մայրաքաղաքի աշխատավորները 700 միլիոն ռուբլուց ավելի եկամուտ են ստացել փոխառություններից, իսկ Մոսկվայի մարզի աշխատավորները միայն վերջին երեք և կես տարվա ընթացքում ստացել են 48 միլիոն ռուբլի։

Փոխառություններից ստացվող եկամուտը հաստատապես մտել է բանվորների ու ծառայողների բյուջեի մեջ։ Ահա, օրինակ, Մոսկվայի «Պարիժսկայա կոմմունա» կոշկեղենի գործարանի ձևերու կորպուսի վերահսկիչ ընկ. Ի. Ս. Ցելդմանը։ Նա հին բաժանորդ է և հաճախ է շահումներ ստանում փոխառություններից։ Ընդհանուր առմամբ նա 3 հազար ռուբլի յե շահել, վորից 900 ռուբլի 1938 և 1939 թվականներին։

Ուխտոմսկի շրջանի «Կոլլեկտիվնիյ տրուդ» արտելի կոլտնտեսական ընկ. Ի. Ն. Լեպնովը միայն անցյալ տարվա վեց ամսվա ընթացքում փոխառություններից շահել է երեք անգամ, ընդհանուր առմամբ 1300 ռուբլի։



Շատ և շատ այդպիսի օրինակներ կարելի յե բերել։

Խորհրդային պետությունն ամենավճարունակ պետությունն է աշխարհում։ Նա ճշտապահորեն է կատարում պարտատոմսերի հանդեպ իր ունեցած պարտավորությունները։ Փոխառությունների խաղարկումները կատարվում են ճիշտ սահմանված ժամկետներին։ Խորհրդային կառավարությունը, խնայողական դրամարկղների, շահումների ստուգման բյուրոների միջոցով, ձեռնարկություններին և հիմնարկներին կից պետվարկին ու խնայողական գործին օժանդակող հանձնաժողովների միջոցով ձեռք է առնում բոլոր միջոցները, վորպեսզի յուրաքանչյուր պարտատոմսատեր ժամանակին և լրիվ ստանա փոխառությունից իրեն հասնող եկամուտը։

Փոխառությամբ ստացվող միջոցների զգալի մասը հանձնվում է միութենական հանրապետությունների պետական բյուջեներին, ինչպես և քաղաքների, շրջանների ու գյուղական խորհուրդների բյուջեներին՝ տեղական տնտեսական ու կուլտուրական շինարարության համար։ Քաղաքների, շրջանների և գյուղական խորհուրդ-

ների բյուջեներին է հանձնվում բանվորների և ծառայողների բաժնեգրությունից ստացվող բոլոր միջոցների 25 տոկոսը և կոլտնտեսականների ու մենատնտես գյուղացիների բաժնեգրությունից ստացվող հասույթների 90 տոկոսը։

Համառոտակի կանգ առնենք Յերրորդ Հնգամյակի (յերկրորդ տարվա) փոխառության վրա, վորի պարտատոմսերն այժմ հանձնվում են բաժանորդներին։

Այդ փոխառությունը բաց է թողնված 20 տարի ժամանակով տարեկան 4 տոկոսով։ Այդ նշանակում է, թե յեկամուտների այն գումարը, վոր վճարելու յե պետությունը պարտատոմսատերերին 20 տարվա ընթացքում, կազմում է միջին հաշվով տարեկան 4 տոկոս։

Փոխառությունը յերկու տեսակ է՝ անպայմանորեն շահող և տոկոսաբեր։ Անպայմանորեն շահող փոխառության յեկամուտները վճարվում են շահումների ձևով։ Շահումները խաղարկվում են վիճակահանությամբ։ Ամեն տարի կատարվում է շահումների 4 վիճակահանություն, 20 տարում՝ 80 վիճակահանություն։ Յուրաքանչյուր պարտատոմս քանի տարվա ընթացքում մեկ անգամ անպայման շա-



հում է։ Փոխառությունը բաց թողնելու հինգ տարվա ընթացքում միջին հաշվով յուրաքանչյուր չորրորդ—հինգերորդ պարտատոմսը շահում է։ Յուրաքանչյուր վիճակահանության ժամանակ խաղարկվում է 150, 200, 500, 1000 և 3000 ռուբլի շահում՝ հարյուր ռուբլիանոց մի պարտատոմսին։ Շահումի գումարի մեջ է մըտնում նաև պարտատոմսի անվանական արժեքը. շահումը վճարելիս, պարտատոմսը մարվում է և հաջորդ վիճակահանություններին չի մասնակցում։

Տոկոսաբեր փոխառության յեկամուտը վճարվում է տոկոսների ձևով ըստ կտրոնների, վորոնք կցված են տվյալ բաժնի յուրաքանչյուր պարտատոմսին։ Յուրաքանչյուր պարտատոմս այդպիսի 20 կտրոն ունի։ Մի կտրոնի դիմաց ամեն տարի վճարվում է պարտատոմսի արժեքի 4 տոկոսը։ Այդպիսով փոխառության 20 տարվա ժամանակամիջոցում տոկոսաբեր փոխառության յուրաքանչյուր հարյուր ռուբլիանոց պարտատոմսի դիմաց վճարվելու յե 80 ռուբլի, հինգ հարյուր ռուբլիանոց պարտատոմսի դիմաց՝ 400 ռուբլի յեկամուտ և այլն, չհաշված պարտատոմսի արժեքը։

Անպայմանորեն շահող փոխառությունը մարվում է աստիճանաբար 20 տարվա ընթացքում, պարտատոմսերի դիմաց շահումները վճարելուն զուգընթաց: Յերրորդ հնգամյակի (յերկրորդ տարվա) փոխառության առաջին խաղարկումը տեղի յե ունենալու 1940 թվականի հուլիսի 11-ին:

Այս է Յերրորդ Հնգամյակի (յերկրորդ տարվա) փոխառության համառոտ բնութագիրը, մի փոխառություն, վորը եյական դեր է խաղացել յերրորդ ստալինյան հնգամյակի տնտեսական, կուլտուրական ու ֆինանսական շինարարության ֆինանսավորման գործում:

ԽՍՀՄ-ի Գերագույն խորհրդի VI սեսիան ԽՍՀ Միության 1940 թվականի պետական բյուջեն հաստատեց ըստ յեկամուտների 183,9 միլիարդ ռուբլի և ըստ ծախսերի՝ 179,9 միլիարդ ռուբլի: Այդ գումարից ավելի քան 100 միլիարդ ռուբլի հատկացվում է ժողովրդական տնտեսությանը և սոցիալ-կուլտուրական շինարարությանը: 57 միլիարդ ռուբլի հատկացված է յերկրի պաշտպանությանը:

1940 թվականի բյուջեյում նախատեսված է 8665 միլիոն ռուբլի հասույթ



բնակչության մեջ բաժնեգրությամբ իրացվող պետական փոխառություններից: Այդ նշանակում է, վոր մեր պետական փոխառությունները շարունակելու յեն իրենց պատվավոր ծառայությունը հօգուտ կոմունիզմի կառուցման գործի:

## ԽՆԱՅՈՂԱԿԱՆ ԴՐԱՄԱՐԿՂՆԵՐԻՆ ՀԱՆՁՆՎՈՂ ԱՎԱՆԴՆԵՐԸ

Խորհրդային խնայողական սիստեմը ևս սկզբունքայնորեն տարբերվում է կապիտալիստական յերկրների խնայողական դրամարկղներից:

Կապիտալիզմի պայմաններում բանվորների և աշխատավոր գյուղացիների ճնշող մեծամասնությունը խնայողություններ ունենալու հնարավորությունից զուրկ է, վորովհետև նրանց աշխատավարձը չի բավականանում նույնիսկ կիսաքաղց գոյություն պահպանելու համար: Կատարելապես պարզ է, վոր գործազուրկները, վորոնց թիվը կապիտալիստական յերկրներում միլիոններ է կազմում, յերազել անգամ չեն կարող վորևէ խնայողության մասին: Փոքրիկ կուտակումներ է հետ

դյում բանվորների և գյուղացիների աննշան մասը միայն, բայց այդ էլ վոչ բնավ ապահովված կյանքից:

Նրանք ստիպված են հրաժարվել իրենց և ընտանիքի համար ամենաանհրաժեշտ բաներից, կուշտ չուտել, վորպեսզի հնարավորություն ունենա մի քանի կոպեկ հետ գցել գործազրկության, հիվանդության, խեղանդամության, ծերության օրերի համար:

Ցարական Ռուսաստանում խնայողական դրամարկղների ավանդատուների հիմնական մասսան կազմում եյին հոգևորականները, խոշոր հողատերերը, առևտրականները, սպաներն ու պաշտոնյաները: Ավանդատուների մեջ ֆաբրիկա-գործարանային բանվորները աննշան թիվ եյին կազմում, ընդ նմին իրենց խնայողությունների չափով նրանք վերջին տեղն եյին բռնում, հետ մնալով նույնիսկ տնային սպասավորներից:

Կապիտալիստական յերկրների բանվորները, ավանդներ տալով խնայդրամարկղները, ինչպես շեշտել է Վ. Ի. Լենինը, ավելի մեծ չափով կախումն են ունենում բուրժուազիայից, ըստ եյության ուժեղացնելով խոշոր կապիտալի հզորությու-



նը: Բուրժուական պետությունը խնայողական դրամարկղներում պահվող փողն օգտագործում է ի շահ կապիտալիստների տիրապետության ամրացման, ընդդեմ աշխատավորության:

Բոլորովին այլ բնույթ են կրում խնայողությունները Խորհրդային Միության մեջ: Դրանք իսկապես ժողովրդական խնայողություններ են, վորովհետև խորհրդային խնայողական դրամարկղների ավանդատուներն են բանվորները, կոլտնտեսականները, խորհրդային ինտելիգենցիան: Մեր յերկրի աշխատավորները յերջանիկ և ապահովված կյանք են վարում, նրանք հաստատապես վստահ են վաղվա նկատմամբ:

Ստալինյան Սահմանադրությունն ապահովում է քաղաքացիների աշխատանքի իրավունքը, հանգստի իրավունքը, կրթության իրավունքը, ծերության դեպքում, ինչպես նաև հիվանդանալու կամ աշխատունակությունը կորցնելու դեպքում նյութական ապահովություն ստանալու իրավունքը:

1933-ից մինչև 1938 թվականը մեր յերկրի ժողովրդական յեկամուտը 48,5 միլիարդից հասավ 105 միլիարդ ռուբլու:

Նույն ժամանակաշրջանում բանվորների և ծառայողների աշխատավարձի տարեկան ֆոնդը 34953 միլիոնից հասավ 96425 միլիոն ռուբլու, իսկ արդյունաբերության բանվորների տարեկան միջին աշխատավարձը 1513-ից հասավ 3447 ռուբլու։ Կոլտնտեսությունների փողային յեկամուտները 1933 թվականի 5661,9 միլիոն ռուբլուց 1937 թվականին հասան 14180,1 միլիոն ռուբլու. Նույն ժամանակաշրջանում ավելի քան յերկու անգամ բարձրացավ յուրաքանչյուր կոլտնտեսականի տնտեսությանը հանձնվող հացահատիկի միջին քանակը՝ հացահատիկային շրջաններում։ Սրանք են բանվորների և կոլտնտեսային գյուղացիության նյութական դրության բարելավման մի քանի ցուցանիշները։

Մեր յերկրի աշխատավորները խնայողություններ են կուտակում խոշոր ծախսումներ կատարելու նպատակով, վորոնք անհրաժեշտ են նրանց անընդհատ աճող կուլտուրական պահանջները բավարարելու համար։ Խնայողական դրամարկղները հնարավորություն են տալիս խնայողությունները ձեռնտու և ապահով կերպով պահ տալու, ուստի և խնայդրամարկղների



սպասարկությունից օգտվում են խորհրդային միլիոնավոր քաղաքացիներ։ Միևնույն ժամանակ, ավանդներ մտցնելով խնայողական դրամարկղները, աշխատավորներն օժանդակում են սոցիալիստական պետության ֆինանսական հետագա ամրացմանը։ Մեր կառավարությունը խնայողական դրամարկղներում պահվող միջոցներն օգտագործում է սոցիալիստական շինարարությունը ֆինանսավորելու համար, քաղաքի աշխատավորության և կոլտնտեսային գյուղի պահանջներն ավելի լավ բավարարելու համար։ Բնակչության ավանդների անվթարությունն ու պահպանումը ապահովվում է մեր սոցիալիստական պետության ամբողջ ունեցվածքով։

Խնայողական դրամարկղների ավանդատուների թիվը ԽՍՀՄ-ում այժմ մոտենում է 17 միլիոնի, ավելի քան կրկնապատկված լինելով վերջին 10 տարում։ Ներկայումս բնակչության ավանդների մնացորդը խնայդրամարկղներում 7 միլիարդ ռուբլուց ավելի յե, մինչդեռ 1928 թվականին կազմում եր 200 միլիոնից քիչ ավելի, իսկ 1933 թվականի սկզբին՝ մոտ 1 միլիարդ ռուբլի։ Զգալի չափով ավելացել է նաև ավանդի միջին չափը։ 1937

թվականին նա կազմում էր 308 ռուբլի, իսկ առ 1 հունվարի 1940 թվականի՝ 418 ռուբլի:

Մեծ հետաքրքրություն են ներկայացնում Մոսկվային վերաբերյալ տվյալները: Մայրաքաղաքի խնայողական դրամարկղների ավանդատուներ են համարյա 1300 հազար մարդ: Բնակչության ավանդների մնացորդն այժմ հասել է 1082 միլիոն ռուբլու՝ 1937 թվականի 611 միլիոնի հանդեպ, իսկ ավանդի միջին չափը կազմում է 835 ռուբլի, մինչդեռ 1937 թվականին կազմում էր 621 ռուբլի:

Մոսկվայի մարզի գյուղերում ավանդի միջին չափը 1937 թվականի 428 ռուբլուց 1939 թվականին հասել էր 530 ռուբլու:

Ավանդատուները, պահ տալով իրենց խնայողությունները խնայդրամարկղներում, զգալի եկամուտներ են ստանում: Երկրորդ հնգամյակի տարիներին և երրորդ հնգամյակի առաջին երկու տարում մեր երկրի բնակչությունը մոտ 1 միլիարդ ռուբլի տոկոս ստացավ ավանդների համար: Մոսկվայի ավանդատուները նույն ժամանակաշրջանում ստացան մոտ 150 միլիոն ռուբլի եկամուտ:

Խնայողական դրամարկղները կատարե-



լապես գաղտնապահ են ավանդների վերաբերմամբ և ոչ ոքին ոչ մի տեղեկանք չեն տալիս ավանդատուների ու ավանդների մասին: Ավանդների դիմաց (սովորական ավանդների) վճարվում է տարեկան 3 տոկոս եկամուտ: Ավանդները և վճարվող տոկոսները ոչ մի հարկման չեն ենթարկվում:

Կառավարության վճռմանը համապատասխան անցյալ տարվանից մտցված է խնայդրամարկղներին հանձնվող ավանդների մի նոր տեսակը՝ ժամկետային ավանդներ, որոնց դիմաց ավելի բարձր եկամուտ է վճարվում՝ տարեկան 5 տոկոս: Ժամկետային ավանդներն ընդունվում են առնվազն 6 ամսվա ժամկետով: Եթե ավանդատուն վեցամսյա ժամկետը լրանալուց առաջ վերցնի ավանդը, ապա խնայդրամարկղը եկամուտը վճարում է 3 տոկոսի հաշվով, ինչպես սովորական ավանդի համար:

Խնայողական դրամարկղները անդրամ հաշվարկներ են կատարում, որոնք մեծ հարմարություններ են տալիս բնակչությանը: Ամեն մի քաղաքացի, խնայողական դրամարկղի ավանդատուն հանդիսանալով, կարող է դրամարկղի միջոցով

վճարել կոմունալ ծառայությունների արժեքը՝ բնակարանի, հեռախոսի, գազի, էլեկտրոեներգիայի արժեքը և այլն, առանց քաղաքային բանկը գնալու։

Վերջապես, խնայողական դրամարկղները մեծ աշխատանք են կատարում պետական փոխառությունների պարտատոմսատերերին սպասարկելու ուղղությամբ։ Նրանք ընդունում են պարտատոմսերը՝ պահելու համար, վարկ են տալիս դրամ դրված պարտատոմսերի դիմաց, վճարում են շահումները, տոկոսները և մարված պարտատոմսերի արժեքը։

Խնայդրամարկղներում կարելի յե ձեռք բերել հատուկ քարտեր, վորոնք, լրացնելուց հետո, ուղարկվում են շահումները ստուգող բյուրոն։ Բյուրոն յուրաքանչյուր խաղարկումից հետո, ստուգում է այդ քարտերը ըստ շահումների ցուցակի և պարտատոմսատերերին հաղորդում է տարված շահումների մասին։

---



# „ՊԱՐՏԱՏՈՄՍԱՏԻՐՈՋ ՅԵՎ ԱՎԱՆԴԱՏՎԻ ՈՐՎԱ" ԽՆԴԻՐՆԵՐԸ

«Պարտատոմսատիրոջ և ավանդատվի օրը» վոչ միայն նպատակ ունի պարզաբանել Խորհրդային կառավարության ֆինանսական քաղաքականությունը, այլև հանդիսանում է խնայողական դրամարկղների, պետվարկի և խնայողական գործին օժանդակող հանձնաժողովների, փոխառության գծով գյուղխորհուրդների լիազորների և ամբողջ ֆինանսական ակտիվի աշխատանքի յուրատեսակ ստուգատեսը։

Առաջինը, վորին պետք է հասնել, դա Յերրորդ Հնգամյակի (յերկրորդ տարվա) փոխառության հաշվարկների ավարտումն է ինչպես քաղաքում, այնպես էլ գյուղում։ Պետք է ապահովել փոխառության բոլոր մուծումների հանձնումը բյուջեյին

և միջոցներ ձեռք առնել, որ ամեն մի բաժանորդ առանց բացառության ստանա այն պարտատոմսերը, որոնց արժեքը վճարել է, այլապես նա կզրկվի շահումների հուլիսի 11-ին կայանալիք առաջին խաղարկությանը մասնակցելու հնարավորությունից:

Պետվարկին և խնայողական գործին օժանդակող հանձնաժողովները ձեռնարկություններում, հիմնարկներում և կոլտնտեսություններում միացնում են հասարակական բազմամիլիոն ակտիվ: Նրանք հսկայական դեր են խաղում փոխառությանը բաժնեգրելու գործում: Ահա թե ինչու կարևոր է, որ պետվարկին և խնայողական գործին օժանդակող հանձնաժողովների գործունեությունը «Պարտատոմսատիրոջ և ավանդատուի օրվա» շրջանում քննարկվի Փաբգործկոմներում ու տեղկոմներում, բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների ընդհանուր ժողովներում: Օժանդակող հանձնաժողովների կազմը պետք է ամրացնել կոլեկտիվում հեղինակություն վայելող առաջավոր մարդկանցով:

Կարևոր է ուսումնասիրել լավագույն օժանդակող հանձնաժողովների փորձը,



դարձնել վերջինս ընդհանուրի սեփականություն: Այդպիսի առաջավոր օժանդակող հանձնաժողովներ քիչ չեն, մասնավորապես Մոսկվայում: Որպես օրինակ կարելի յե մատնանշել «Իսկրա Ռեվոլյուցիի» № 7 տպարանին կից (Կիևի ռայոն) օժանդակող հանձնաժողովը:

Այդ օժանդակող հանձնաժողովը միշտ հոգ է տանում պարտատոմսատերերի կուլտուրական սպասարկման համար: Լավ հիմքի վրա յե դրված տեղեկանքներ տալու աշխատանքը, կանոնավոր կերպով աշխատում է շահումների ստուգման սեղանը: Բազմատիրաժ թերթում սիստեմատիկաբար լուսաբանվում է փոխառությունների և ավանդների դերն ու նշանակությունը, ցույց են տրվում օժանդակող հանձնաժողովի լավագույն ակտիվիստների աշխատանքի օրինակները:

Տպարանում մեծ հաջողությամբ անցկացվեց Երրորդ Հնգամյակի (յերկրորդ տարվա) փոխառության բաժնեգրությունը. արդեն յերրորդ օրը փոխառությանը բաժնեգրվեցին բոլոր բանվորներն ու ծառայողները: Օժանդակող հանձնաժողովը քիչ բան չի արել բաժնեգրությունն ամրապնդելու համար: Օժանդակող հանձնա-

ժողովը նոր աշխատանքի մտած ամեն մեկին հնարավորություն է տալիս արագորեն վերսկսել փոխառության բաժնեգրությունը: Այդ բանը գլուխ էր բերում ոժանդակող հանձնաժողովը նրանով, որ ժամանակին տեղեկանում էր ձեռնարկության մեջ նոր ընդունված բոլոր անձանց մասին, հմտորեն պարզաբանման աշխատանք էր կատարում նրանց մեջ:

«Իսկրա ռեվոլյուցիա»-յի № 7 տպարանին կից ոժանդակող հանձնաժողովը շատ բան է անում նաև Յերրորդ Հնգամյակի (յերկրորդ տարվա) փոխառության հաշվարկները հաջող ավարտելու համար: Մասնավորապես, նա հատուկ ակտիվիստներ է առանձնացրել՝ այլ տեղ մեկնած բաժանորդներին գտնելու և նրանց հասուցած պարտատոմսերը հանձնելու համար:

«Իսկրա ռեվոլյուցիա»-յի № 7 տպարանի ոժանդակող հանձնաժողովի աշխատանքով շարունակ հետաքրքրվում և այն ղեկավարում են տպարանի կուսակցական և պրոֆմիութենական կազմակերպությունները: Վերջին 9 ամսվա ընթացքում ոժանդակող հանձնաժողովը իր աշխատանքի մասին յերեք անգամ հաշիվ է տվել ակտիվի ժո-



ղովում, յերկու անգամ՝ կուսակցական բյուրոյում: Դա շատ կարևոր է՝ վորտեղ ձեռնարկությունների և հիմնարկների կուսակցական և պրոֆմիութենական կազմակերպությունները որ-ավուր ղեկավարում են ոժանդակող հանձնաժողովների աշխատանքը, ոգնում են նրանց, այնտեղ փոխառության բնագավառում կատարվող աշխատանքը հաջող է ընթանում ամբողջ տարին:

Ի՞նչ ընդհանուր հետևություններ կարելի յե անել այդ և մյուս առաջավոր ոժանդակող հանձնաժողովների աշխատանքի պրակտիկայից:

Ամենագլխավորն է՝ ամրացնել ոժանդակող հանձնաժողովների և բաժնեգրության լիազորների կազմը կոլեկտիվի լավագույն մարդկանցով: Ոժանդակող հանձնաժողովի անդամները և բաժնեգրության լիազորները նախ և առաջ պետք է լինեն փոխառության լավ ագիտատորներ, պետք է լավ գիտենան բաժնեգրությունն անցկացնելու կարգը և փոխառությունը բաց թողնելու պայմանները:

Փոխառության բաժնեգրությունը հաջող անցկացնելու հիմքն է կազմում աշխատավորներին ճիշտ պարզաբանելը փոխառու-

թյան նշանակությունը և այն յեկամուտները, վորոնք ստանում ե ամեն մի պարտատոմսատեր: Բաժնեգրությանը առանց բացառության բոլոր աշխատավորների մասնակցության կարելի յե հասնել միայն այն դեպքում, յերբ ոժանդակող հանձնաժողովը չի մոռանում արձակուրդ գնացած կամ գործուղված աշխատողներին, կապվում ե այդ ընկերների հետ, իրազեկ ե դարձնում նրանց փոխառությունը բաց թողնվելու մասին և նրանց համաձայնությամբ ձևակերպում ե բաժնեգրությունը: Բաժնեգրման կամավորության սկզբունքի ամենախիստ պահպանումը հանդիսանում ե յուրաքանչյուր ոժանդակող հանձնաժողովի, փոխառության յուրաքանչյուր լիազորի աշխատանքի անհրաժեշտ պայմանը:

Ոժանդակող հանձնաժողովների աշխատանքը բաժնեգրությունն անցկացնելով չի վերջանում: Նրանք պետք ե ձգտեն ամրացնելու բաժնեգրության բնագավառում ձեռք բերված ամենաբարձր մակարդակը, հնարավորություն տալով նոր աշխատանքի մտնող բոլոր անձանց՝ փոխառությանը արագորեն բաժնեգրվելու, պետք ե հետևեն, վոր հաշվապահությունը ճիշտ պահի բաժնեգրության մուծումները և ժամանակին



ու լրիվ փոխադրի դրանք պետության դրամարկղը: Ոժանդակող հանձնաժողովները կոչված են ոգնելու պարտատոմսատերերի կուլտուրական սպասարկմանը, հոգ տանեն, վոր նրանք ժամանակին ստանան փոխառություններից իրենց հասնող յեկամուտները, կազմակերպեն պարտատոմսերի սիստեմատիկ ստուգում ըստ շահումների ցուցակի և այլն: Նրանք կոչված են ագիտացիա մղելու փողը խնայդրամարկղներում պահելու համար, միջոցներ ձեռք առնեն, վոր խնայդրամարկղները լավ սպասարկեն ավանդատուներին:

Ոժանդակող հանձնաժողովներն ունեն աշխատանքի մի այլ կարևոր բնագավառ՝ կյանքի կոլեկտիվ ապահովագրում: Կյանքի ապահովագրումը, վոր անց ե կացնում Պետապը, մի լրացուցիչ ձև ե, վորով նյութապես ապահովվում են աշխատավորներն ու նրանց ընտանիքները՝ մահվան դեպքում կամ աշխատունակությունը կորցնելու դեպքում: Ոժանդակող հանձնաժողովների խնդիրն ե՝ պարզաբանել ապահովագրության նշանակությունը, կազմակերպել հասարակական ակտիվ, դրամահավաքներ նշանակել ցեխերում, բաժիններում, բրիգադաներում և, մաս-

սայական աշխատանքի հիման վրա, առավելագույն թվով աշխատավորներ ներգրավել կյանքի կոլեկտիվ ապահովագրման գործի մեջ:

Գյուղում ևս «Պարտատոմսատիրոջ և ավանդատուի օրն» անց է կացվում Յերրորդ Հնգամյակի (յերկրորդ տարվա) փոխառության հաշվարկները հաջող ավարտելու նշանաբանով: Բոլոր բաժանորդներին պետք է ժամանակին հանձնվեն այն պարտատոմսերը, վորոնց արժեքը վճարված է, վորպեսզի բաժանորդները հնարավորություն ունենան փոխառության առաջին խաղարկմանը մասնակցելու:

Հայտնի յե, վոր գյուղում փոխառությունն իրացնելու կազմակերպական-մասսայական ամբողջ աշխատանքը կատարում են գյուղկան խորհուրդները՝ ոժանդակող հանձնաժողովների ակտիվ մասնակցությամբ:

Կոլտնտեսականների և մենատնտես գյուղացիների մեջ բաժնեգրությունն անցկացնելու, բաժնեգրության մուծումները հավաքելու և պարտատոմսերը բաժանորդներին բաժանելու համար գյուղխորհուրդները հատուկ լիազորներ են առանձ-



նացնում հասարակական լավագույն ակտիվիստներից: Շատ կարևոր է, վոր լիազորները իրենց աշխատանքի մասին հաշիվ տան կոլտնտեսականների ընդհանուր ժողովներում, գյուղխորհուրդների պլենումներում:

Կոլտնտեսականները և մենատնտես գյուղացիները, ինչպես նաև բանվորներն ու ծառայողները, իրավունք ունեն իրենց ձեռք բերած պարտատոմսերի արժեքը մուծել ըստ ցանկության լրիվ կամ մասամբ հենց բաժնեգրվելիս, կամ մասնավճարով: Մինչդեռ բանվորների և ծառայողների բաժնեգրության մուծումները նրանց համաձայնությամբ պահում են ձեռնարկությունների և հիմնարկների հաշվապահությունները բաժանորդների աշխատավարձից, կոլտնտեսականները և մենատնտես գյուղացիները պարտատոմսերի արժեքը վճարում են կանխիկ փողով՝ գյուղխորհուրդների լիազորների միջոցով: Կոլտնտեսությունների վարչություններին արգելված է մուծել կոլտնտեսականների բաժնեգրության գումարը կոլտնտեսությունների միջոցներից, ինչպես նաև այն գումարներից, վորոնք հասնում են կոլ-

տընտեսականներին ըստ աշխօրերի և նըրանց հետ կատարվող այլ հաշվարկների:

Ինքն ըստ ինքյան հասկանալի յե, վոր և՛ բաժնեգրության մեջ, և՛ փոխառության մուծումները հանձնելու գործում կոլտնտեսային գյուղի ակտիվիստները՝ գյուղխորհուրդների նախագահներն ու անդամները, կոլտնտվարչության նախագահներն ու անդամները, բրիգադիրները, վերջապես լիագորներն իրենք,— պետք ե օրինակ հանդիսանան գյուղի բոլոր աշխատավորների համար:

«Պարտատոմսատիրոջ և ավանդատվի օրը» պետք ե այնպես անել, վոր գյուղխորհուրդների առաջավոր լիագորների փորձը լայնորեն հայտնի դառնա գյուղի բոլոր լիագորներին և ակտիվիստներին:

Ցե՛վ քաղաքներում, և՛ գյուղերում— ամենուրեք «Պարտատոմսատիրոջ և ավանդատվի օրը» պետք ե օգտագործել՝ բարելավելու համար ոժանդակող հանձնաժողովների և հասարակական ֆինանսական ակտիվի գործունեյությունը, բարելավելու փոխառությունների և ավանդների բնագավառում կատարվող ամբողջ աշխատանքը:



Այդ կնպաստի մեր սոցիալիստական պետության ֆինանսական հզորության հետագա ամրացմանը, հետևաբար յերրորդ ստալինյան հնգամյակի ավելի հաջող կատարմանը:

---

# ԱԳԻՏԱՑԻԱՆ ՓԱՍՏԵՐՈՎ

Ագիտատորներին օգնելու համար տպագրում ենք ՀԿ(բ)Կ 13-րդ համագումարում ընկ. Գր. Հարությունյանի զեկուցումից և Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի դեպուտատների գերագույն խորհրդի չորրորդ սեսսիայում մեր յերկրի նվաճումների մասին բերած մի քանի թվեր և փաստեր:

★ Յերրորդ հնգամյակի 2-րդ տարվա փոխառությունը Հայկական ԽՍՀ-ում տարածվեց 39 միլ. ռուբլ. գումարով, կամ 1938 թվականի բաժնեգրության համեմատությամբ տվեց 30,8 տոկոս աճ:

★ Յերևանի պետական համալսարանում սովորում են 1800 ուսանողներ, պրոֆ. դասախոսական կազմն է 200 հոգի:

★ Այս տարի Հայաստանի գյուղական շրջաններում Լուսժողկոմատի գծով 10



միլիոն ռուբլու սահմաններում կառուցվում է 52 դպրոց, վորից 11-ը՝ տարրական, 16-ը՝ վոչ լրիվ միջնակարգ, 25-ը՝ միջնակարգ:

★ Յերրորդ հնգամյակի (յերկրորդ տարվա բաժնի) փոխառությունը Հայաստանում բաժնեգրվել են 348 հազ. աշխատավորներ:

★ Միմիայն 1939 թ. ընթացքում Հայաստանի խնայողական դրամարկղները փոխառությունների պարտատոմս պահողներին վճարել են շահումներ և տոկոսներ (ներառյալ մարված պարտատոմսերի արժեքը) 2250 հազար ռուբլի գումարով:

★ Հայաստանի աշխատավորության բարեկեցության աճման հետ զուգընթաց աճում է և ավանդների գումարը խնայողական դրամարկղներում՝

1933 թ.— 4043 հազ. ռուբլի, 1934 թ.— 5900 հազ. ռուբլի, 1935 թ.— 9862 հազ. ռուբլի, 1936 թ.— 15120 հազ. ռուբլի, 1937 թ.— 19125 հազ. ռուբլի, իսկ 1/1 1940 թ. 32213 հազ. ռուբլի:

★ Առ 1/1—1940 թ. Հայաստանում կան 251 խնայողական դրամարկղներ:

1940 թ. ընթացքում բացվելու յեն 41 նոր խնայողական դրամարկղներ:

★ 1939 թվի Համամիութենական գյու-
ղատնտեսական ցուցահանդեսի մասնակից-
ների թիվը Հայկական ԽՍՀ-ից յեղել է
1793, որից 170 կոլխոզ, 5 սովխոզ, 72
անասնապահական ֆերմա, 10 պատանի
բնասեր և սոցիալիստական գյուղատնտե-
սության 1535 առաջավորներ:

★ 1940 թվի Համամիութենական գյու-
ղատնտեսական ցուցահանդեսին մասնակցե-
լու համար Հայկական ԽՍՀ Ժողկոմխորհը
հաստատել է 5149 թեկնածու, որից 444
կոլխոզ (որը կազմում է հանրապետու-
թյան կոլխոզների 41 տոկոսը), 89 անաս-
նապահական ֆերմա, 5 սովխոզ, 8 ինստի-
տուտ և գիտահետազոտական հիմնարկ, 30
զանազան տնտեսական կազմակերպու-
թյուն, 3 ՄՏ կայան, 6 ռայոն, 131 պա-
տանի բնասերներ և սոցիալիստական
դաշտերի 4458 առաջավորներ:

★ Հայկական ԽՍՀ 1940 թվականի պե-
տական բյուջեն կազմում է 474·886·600
ռուբլի:

★ Հայաստանում մենք ունենք 1,039
կոլխոզ: Առ 1-ը հունվարի 1940 թվի կոլ-
խոզներում կար 3248 ֆերմա, որը 1938



թվի համեմատությամբ տալիս է աճ 44
տոկոսով:

★ Վերջին տարիների ընթացքում զգա-
լիորեն աճել է կոլխոզների յեկամտաբե-
րությունը, Ղամարլույի շրջանի Արտա-
շատի կոլխոզի յեկամուտը հասնում է
3·250·000 ռուբլու, իսկ Վաղարշապատի
շրջանի «Անաստված» կոլխոզի յեկամուտը՝
3·303·000 ռուբլու:

★ 1938 թվի ընթացքում Հայկական
ԽՍՀ-ի 13·400 կոլխոզնիկներ կառուցել են
նոր տներ, իսկ 1939 թվին նոր տներ կա-
ռուցել են ավելի քան 15 հազար կոլխոզ-
նիկներ:

★ Մեծապես բարելավվել է աշխատա-
վորների բուժսպասարկումը: Յեթե 1937
թվին Հայաստանում կար 51 հիվանդանոց
և նրանցում յերկու հազար մահճակալ, ա-
պա 1939 թվին մենք ունենք 65 հիվանդա-
նոց 2·950 մահճակալով:

★ Աճել է ծննդատների թիվը Հայաստա-
նում, յեթե 1937 թվին մենք ունեյինք 11
ծննդատուն՝ 229 մահճակալով, ապա 1939
թվին մենք ունենք 24 ծննդատուն 660
մահճակալով:

★ Կարտոֆելի բերքատվությամբ Հա-
յաստանում առաջին տեղը գրավեցին Սոտ-

փանավանի շրջանի Գյուլագարակ գյուղի կոլխոզի օղակավարուհի Լուսնիշաղ Ծահինյանը և Հոբարցի գյուղի կոլխոզի օղակավարուհի Հասոմ Ղուկասյանը, վորոնք ստացան հեկտարից միջին հաշվով 565 ցենտներ ռեկորդային բերք։ Հայկական ՍՍՀ Գերագույն Խորհուրդն այդ յերկու կոլխոզնիկուհիներին պարգևատրեց պատվո գրով։

★ Մեծ հաջողություններ են ձեռք բերվել նոր հավաքված կարտոֆելով ցանք կատարելու և յերկրորդ բերք ստանալու գործում։

Արմֆանի գիտական աշխատող ընկ. տեր-Սահակյանը և Նոյեմբերյանի շրջանի Արդվիդ գյուղի կոլխոզի խրճիթ-լաբորատորիայի վարիչ ընկ. Մարտիրոսյանը նույն այդ մեթոդով ստացել են հեկտարից, առաջինը 80 ցենտներ, իսկ յերկրորդը 14[illegible] ցենտներ կարտոֆելի յերկրորդ բերք։

★ 1937 թվին գոյություն ունեցող 24 ՄՏԿ-ների փոխարեն՝ 1.111 տրակտորով, 1939 թվին մենք ունենք 32 ՄՏԿ՝ 12[illegible]5 տրակտորով։

★ Հայկական ՍՍՀ-ում այժմ հաշվվում են 84 միլիոնատեր կոլտնտեսություններ։

★ Կոլտնտեսությունների ընթացիկ հա-



շիվներում առ 1-ը հունվարի 1940 թ. Պետբանկում և Գյուղբանկում հաշվվում է 62.995 հազար ռուբլի, անցյալ տարվա 53.864 հազար ռուբլու դիմաց։

★ Մայիսի 15-ի և 16-ի ընթացքում Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի Հայկական ՍՍՀ պավիլիոնը դիտել են 50 հազար մարդ. ընդհանուրի ուշադրությունը գրավում է Գարանֆիլյանի գործած գորգը՝ մեծ Ստալինի պորտրետով։ Այցելուները հատուկ հետաքրքրությամբ դիտում են ավազանը, վորի մեջ լողում են Սևանի հռչակավոր իշխան ձկները։

★ Յերևանի դպրոցներում սովորում են 40.000 աշակերտ, իսկ ԲՈՒՀ-երում՝ 6000 ուսանող։

---

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ-ԻՐԱՆԱԿԱՆ ՊԱՅՄԱՆԱԳԻՐ ԱՌԵՎՏՐԻ ՅԵՎ ԾՈՎԱԳՆԱՑՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Կնքված է 1940 թվի մարտի 25-ին, Իրանի մայրաքաղաք Թեհրանում: Այս պայմանագիրը կանոնավորում է Խորհրդային Միության հարաբերությունները Իրանի հետ տնտեսական բնագավառում, քանի վոր 1938 թվի կեսերից, յերբ լրացավ նախկին առևտրական պայմանագրի ժամկետը, յերկու յերկրների միջև գոյություն ունեյին անպայմանագրային հարաբերություններ և առևտրական օպերացիաների ծավալը զգալիորեն կրճատվել եր:*

*Այս պայմանագիրը սահմանում է ԽՍՀՄ-ի և Իրանի միջև առևտրին առավելագույն չափով նպաստելու սկզբունքը, Իրանին իրավունք է վերապահում ապրանքների տրանզիտ կատարել ԽՍՀՄ-ի*



*տերիտորիայի վրայով: Խորհրդային Միությունը, ինչպես նախկին առևտրական պայմանագրի գործողության տարիներին, Իրան է արտահանելու արդյունաբերական ապրանքներ— յերկաթ, պողպատ, մեքենաներ— և այնտեղից ստանալու յե գյուղատնտեսական ապրանքներ— բուրդ, բամբակ, կաշեհումք, բրինձ, չորացած մրգեղեն:*

*Իրանը (Պարսկաստանը) ասիական մի պետություն է, վոր սահմանակից է ԽՍՀՄ-ին (սահմանի յերկարությունը 2.500 կիլոմետրից ավելի յե), Աֆղանստանին, Հնդկաստանին, Իրաքին և Թյուրքիային: Իրանի տերիտորիան 1645 հազար քառակուսի կիլոմետր է, ազգաբնակչությունը՝ մոտ 15 միլիոն մարդ: Պետական կարգերը՝ սահմանադրական միապետություն: Իրանը հետամնաց ագրարային յերկիր է: Գյուղատնտեսության գլխավոր մթերքներն են՝ ցորեն, գարի, բրինձ, բամբակ, մրգեղեն, մետաքս, ծխախոտ: Յերկրում զարգացած է անասնապահությունը, վորը տալիս է բուրդ և կաշեղեն: Իրանը հարուստ է նավթով (համաշխարհային պաշարի մոտ 12%-ը, հանույթի գծով հինգերորդ տեղն է բռնում աշ-*

խարհում), որի հանքավայրերի մշակումը գտնվում է «Անգլո-Իրանական ընկերության» ձեռքում, բրիտանական կառավարության վերահսկողության տակ: Օտարերկրյա կախումից ազատագրվելու ձգտող Իրանի արդյունաբերությունն սկսել է հաջողությամբ զարգանալ վերջին տարիներս: Արդյունաբերական զարգացման գործում Իրանին մեծ օգնություն է ցույց տալիս Խորհրդային Միությունը:

Խորհրդային-իրանական բարեկամական հարաբերությունները հաստատվել են բարեկամության վերաբերյալ այն պայմանագրով, որ կնքվեց 1921 թվի փետրվարի 26-ին և վոչնչացրեց Պարսկաստանի հետ ցարական Ռուսաստանի ունեցած ստրկացուցիչ պայմանագրերը: Այնուհետև 1927 թվի հոկտեմբերի 1-ին ԽՍՀՄ-ի և Իրանի միջև կնքվեց ապահովության և չեզոքության վերաբերյալ պայմանագիր: Ապրանքափոխանակությունը Խորհրդային Միության հետ միշտ խոշորագույն տեղ է գրավել Իրանի արտաքին առևտրի մեջ. այսպես, 1937-1938 թվին ԽՍՀՄ-ի տեսակարար կշիռը իրանական իմպորտում կազմեց 35%, Իրանի էքսպորտում՝ 32,5%: ԽՍՀՄ-ի հետ առևտրական պայմանագիր



չունենալն ուժեղ չափով անդրադարձավ Իրանի էկոնոմիկայի վրա, հատկապես Յեվրոպայում պատերազմ սկսվելուց հետո: Այժմ Իրանը հնարավորություն կունենա ուշքի գալ այն հարվածներից, որ հասցրել են նրա արտաքին առևտրին պատերազմը և բլոկադան:

Իրանի և ԽՍՀՄ-ի միջև առևտրական նոր պայմանագրի կնքումն ունի նաև քաղաքական մեծ նշանակություն, քանի որ վերջ է դնում վերջին ժամանակներս մի քանի արևմտյան տերությունների կողմից տարածվող ստահոդ հերյուրանքներին: Այդ հերյուրանքների մասին ընկ. Մոլոտովը ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի սեսսիայում ասաց. «Իսկ Խորհրդային Միությանը վերագրվող ֆանտաստիկական պլանները Կարմիր Բանակի ինչ-որ արշավանքների մասին «դեպի Հնդկաստան», «դեպի Արևելք» և այլն,— այնպիսի ակնհայտ վայրենություն են, որ նման անհեթեթ դատարկաբանություններին կարող են հավատալ միմիայն կատարելապես խելքը թռցրած մարդիկ»:

Պատ. խմբագիր՝ Դ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Պատ. ճարտուղար՝ Հ. ՍԱՐԳՍՅԱՆ



Սրբագրիչ՝ ՀԱՐ. ՓԱՐԻԿՅԱՆ

Գլավլիտի լիազոր Զ—1136
Պատվեր՝ 527, տիրաժ՝ 10555
Հանձնված է արտադրության 14/VI 1940 թ.
Ստորագրված է տպագրության 19/VI 1940 թ.

Հայկական ԽՍՀ ԺԿԽ-ին կից թերթերի և
ամսագրերի տպարան, Երևան